Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Նյութեր զրույցների համար



### Ագիտացիոն աշխատանքի փորձից



### Օգտագործիր զրույցի ժամանակ



### Օգնություն ագիտատորներին



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60 րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:






# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Հունվարի 25—27-ը Երևանում տեղի ունեցավ ՀԿՊ XIX համագումարը: Համագումարը քննության առավ հետևյալ հարցերը՝ 1. Հաշվետու զեկուցում Հայաստանի ԿՊ Կենտկոմի աշխատանքի մասին, 2. Հայաստանի ԿՊ Վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը, 3. Հայաստանի ԿՊ ղեկավար օրգանների ընտրությունները: Համագումարին մասնակցում էին 506 պատգամավոր վճռական ձայնի և 24 պատգամավոր խորհրդակցական ձայնի իրավունքով:

Կենտկոմի աշխատանքների մասին համագումարին տված իր հաշվետու զեկուցման մեջ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հ. Թովմասյանը նշեց, որ XVIII և XIX համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի աշխատավորները պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ խոշոր հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական





տնտեսության բոլոր բնագավառներում։ Սոցիալիստական շինարարության ճանապարհին մեր ձեռք բերած այդ հաջողությունները, ասաց ընկ. Թովմասյանը, հետևանք է պարտիայի ու կառավարության ամենաջերմ հոգատարության և ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործման։

Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է ռեսպուբլիկայի արդյունաբերության արագ վերելքով։ 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքի աճը կազմել է 20 տոկոս։ Անցած երկու տարում կառուցվել ու շահագործման են հանձնվել 30 նոր արդյունաբերական ձեռնարկություններ։

Ռեսպուբլիկայի կառավարության և պարտիայի Կենտկոմի ջանքերով վերջին շրջանում առանձնապես սկսել է ուժեղ թափով զարգանալ մեքենաշինությունը, գործիքաշինությունը, արտադրության միջոցների արտադրությունը։ Առանձնակի ուշադրություն է դարձվում ճշգրիտ մեխանիկայի ստեղծման և զարգացման վրա։ Եթե արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր աճը կազմել է 20 տոկոս, ապա մեքենաշինության արտադրանքը աճել



է ավելի քան 40 տոկոսով, իսկ գործիքաշինությունը՝ 5 անգամ։ 1955 թվականի համեմատությամբ խիստ աճել է ծանր արդյունաբերության արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների արտադրությունը։ Ավտոդողերի թողարկումն ավելացել է 71 տոկոսով, էլեկտրաշարժիչներինը՝ 73 տոկոսով, ուժային տրանսֆորմատորներինը՝ 50 տոկոսով, կենտրոնախույս պոմպերինը՝ 77 տոկոսով, ավտոմոբիլային պահեստամասերինը՝ 80 տոկոսով, հաղորդալարերինը՝ 45 տոկոսով և մոլիբդենի կոնցենտրատինը՝ 39 տոկոսով։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացել է կաշվե կոշկեղենինը՝ 30 տոկոսով, տրիկոտաժեղենինը՝ 15 տոկոսով, մետաքսե գործվածքեղենինը՝ 24 տոկոսով, կահույքինը՝ 20 տոկոսով, հրուշակեղենինը՝ 37 տոկոսով, կենդանական յուղինը՝ 25 տոկոսով, պահածոյինը՝ 32 տոկոսով, պանրինը՝ 24 տոկոսով։

Ոգեշնչված պարտիայի և կառավարության որոշումներով Հայաստանի աշխատավորները ժամկետից շուտ կատարեցին 1957 թվականի պետական պլանը և պլանից ավելի երկրին տվեցին 134 միլիոն ռուբլու արտադրանք։

Ժողովրդական տնտեսության խորհրդի

ստեղծումը և գերատեսչական պատնեշների վերացումը լայնորեն նպաստեցին արտադրության ռեզերվների ավելի լավ օգտագործմանը։ Արտադրության բնույթով միատեսակ ձեռնարկությունների ու ցեխերի անջատվածության վերացումը և ղեկավարության կոնկրետացումը, ժողտնտխորհին հնարավորություն տվեցին կառավարչական ապարատը կրճատել 164 միավորով և աշխատավարձի տարեկան ֆոնդից տնտեսել 2 միլիոն ռուբլի։

Արդյունաբերության զարգացման հետ միասին, լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև սոցիալիստական գյուղատնտեսության ուղղությամբ։ Գյուղատնտեսության առավել զարգացման հարցը դնելով, պարտիան և կառավարությունը ելնում են այն բանից, որպեսզի բնակչության ամեն մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Սովետական ժողովուրդը ջերմորեն ընդունեց հարազատ պարտիայի այդ կոչը և ոգևորությամբ ձեռնամուխ եղավ այդ խնդրի կենսագործմանը։

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտու-



րաների բերքատվությունը։ 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունը ավելացել է 15 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 20,5 տոկոսով, խաղողինը՝ 8,2 տոկոսով։ Նշանակալից չափով բարձրացել է բանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունը։

1955 թվականի հետ համեմատած մսի արտադրությունը ավելացել է մոտ 9 տոկոսով, կաթինը՝ 19 տոկոսով, բրդինը՝ 15,3 տոկոսով։ Կոլտնտեսություններում մեկ կովի կաթնատվությունը 1957 թվականին կազմել է 1.342 կիլոգրամ, որը 92 կիլոգրամով ավել է քան նախատեսված է 1960 թվականի համար։ Այդ բոլորի հետ միասին կոլտնտեսությունների դրամական եկամուտները, նախնական տվյալներով, աճել են 23 տոկոսով։

Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս հրապարակված Դիմումի մեջ արծարծած խնդիրներից, համագումարը ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և հողային օրգանների առջև խնդիր դրեց Հայաստանում ամբողջովին վերցրած 100 հեկտար հողատարածության դիմաց մսի արտադրությունը 1958 թվականին հասցնել առնվազն 58 ցենտների, իսկ 1959 թվականին՝ 65—70 ցենտների։ Այդ նույն

*թվականներին 100 հեկտար հողատարածության դիմաց համապատասխանաբար կաթի արտադրությունը հասցնել 240 և 290 ցենտների։*

*Խոսելով ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարների մասին, ընկ. Թովմասյանը նշեց, որ մեզ մոտ բոլոր պայմանները կան առաջիկա 7 տարում ռեսպուբլիկայի էկոնոմիկան էլ ավելի բուռն թափով զարգացնելու համար։*

*Գունավոր մետալուրգիայի զարգացման ասպարեզում հիմնական խնդիրներն են՝ Քաջարանի և Դաստակերտի կոմբինատների ընդլայնումը և նրանց կարողությունների մեծացումը 2—3 անգամ, Ագարակի կոմբինատի շինարարության ավարտումը, Ղափանի հարստացուցիչ ֆաբրիկայի ընդլայնումը և Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի կառուցումը և այլն։ Այդ միջոցառումների կենսագործումը հնարավորություն կտա 1965 թվականին գունավոր մետալուրգիայի արտադրությունը, 1958 թվականի համեմատությամբ, մեծացնել ավելի քան 3 անգամ։*

*Լայն զարգացում է ստանալու քիմիական արդյունաբերությունը։ Մոտակա տարիներին այն կավելանա մոտ 4 անգամ։*

*Հատուկ ուշադրություն է դարձվելու մեքե-*



*նաշինության զարգացմանը։ 1958 թվականին շարք կմտնեն ֆրեզերային հաստոցների գործարանը Երևանում, հաստոցանորմալների գործարանը Վարդաշենում։ Այդպիսի ձեռնարկություններ կստեղծվեն նաև Լենինականում և Լուսավանում։ Մետաղահատ հաստոցների թողարկումը 1958 թվականի 2.200 հատից 1965 թվականին կհասցվի 15 հազար հատի։*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը առաջիկա 7 տարում աճելու է ավելի քան 3 անգամ։*

*Գործիքաշինության, մասնավորապես ճշգրիտ գործիքաշինության արտադրանքը կավելանա 4 անգամ։ Առաջիկայում շարք կմտնեն այդպիսի մոտ 10 նոր ձեռնարկություններ։*

*Ժողովրդական սպառման ապրանքների ասպարեզում բնակչության պահանջմունքները լրիվ բավարարելու համար արագ տեմպերով զարգանալու է թեթև և սննդի արդյունաբերությունը։*

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար ենթադրվում է առաջիկա 5—7 տարում կատարել ջրաշինարարական մեծ աշխատանքներ, որոնց շնորհիվ ռեսպուբլիկայի ջրովի տարածություն-*

ները կավելանան 45—50 հազար հեկտարով։

Համագումարը արձանագրեց, որ վերջին տարիներում խոշոր բարելավումներն են կատարվել աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը բարձրացնելու և նրանց հարկերը պակասեցնելու, կենսաթոշակները ավելացնելու և փոխառության գծով վճարումները նվազեցնելու շնորհիվ ռեսպուբլիկայի աշխատավորների եկամուտները միայն 1957 թվականին ավելացան 365 միլիոն ռուբլով։

Գյուղատնտեսական մթերքների մթերումների նորմաներն իջեցնելու, մթերման և գնման գները բարձրացնելու շնորհիվ կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները 1957 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, ավելացան 280 միլիոն ռուբլով։ Եթե դրան ավելացնենք նաև պետությանը հանձնած և վաճառած գյուղատնտեսական մթերքների ծավալի աճը, ապա եկամուտների ավելացումը կազմում է 371 միլիոն 500 հազար ռուբլի։

Այդ ամենից բացի, Սովետական կառավարությունը զիջեց հայրենադարձ հայերի անհատական բնակարանային շինարարության



համար բաց թողած վարկերի պարտքը՝ 140 միլիոն ռուբլի գումարով։

Եկամուտների այդպիսի աճը բարենպաստ անդրադարձավ բնակչության գնողունակության բարձրացման վրա։ 1955 թվականի համեմատությամբ, 1957 թվականին ռեսպուբլիկայում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը աճեց 719 միլիոն ռուբլով կամ 23,3 տոկոսով։

1956—1957 թվականներին ռեսպուբլիկայի պետական ձեռնարկություններն ու հիմնարկները կառուցեցին և շահագործման հանձնեցին 238 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Նույն ժամանակամիջոցում բանվորներն ու ծառայողները պետական վարկի օգնությամբ կառուցեցին 250 հազար քառակուսի մետր տարածություն, իսկ կոլտնտեսականները՝ 17 հազար տուն։

Հաշվետու ժամանակաշրջանում լուրջ աշխատանքներ են կատարվել նաև առողջապահության և լուսավորության գործի բարելավման ուղղությամբ։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները լուրջ հաջողություններ են ձեռք բերել ներպարտիական դեմոկրատիայի ծավալման, կոմունիստների ակտի-

վության և նախաձեռնության բարձրացման գործում։

Համագումարը Հայաստանի պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ ամեն կերպ բարձրացնել ռեսպուբլիկայի պետական, հասարակական-քաղաքական, տնտեսական և կուլտուրական ամբողջ կյանքի պարտիական ղեկավարման մակարդակը, անշեղորեն իրագործել պարտիական և պետական ղեկավարման լենինյան նորմաները, է՛լ ավելի ամրապնդել կապերը աշխատավորական լայն մասսաների հետ, լայնորեն զարգացնել ներպարտիական դեմոկրատիան, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ամրապնդել պարտիական և պետական կարգապահությունը, բարձրացնել բոլոր կոմունիստների նախաձեռնությունը և այն ուղղել մեր փառապանծ պարտիայի մեծ կանխատեսումների կենսագործմանը։

Զինված ՍՄԿՊ XX համագումարի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի որոշումներով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն ու ողջ աշխատավորությունը նորանոր հաջողություններ ձեռք կբերեն կոմունիզմի կառուցման վեհ գործում։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԸ

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Գանեստի գեներալ-մայոր

Սովետական ժողովուրդը մեծ հպարտության զգացումով նշում է իր Զինված Ուժերի փառապանծ 40-ամյակը։

Իր գոյության 40 տարիների ընթացքում Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը, որոնք Կոմունիստական պարտիայի կողմից ստեղծվել, կոփվել և դաստիարակվել են մեր սոցիալիստական պետության բազմաթիվ թշնամիների դեմ մղված մարտերում, ամբողջ աշխարհի առջև ցուցաբերեցին քաջության, մարտական սխրագործության և մասսայական հերոսության վառ օրինակներ։

Միջազգային իմպերիալիզմի կողմից Սովետական պետությանը փաթաթված բոլոր ռազմական փորձություններից մեր բանակը և նավատորմը դուրս են եկել հաղթանակած։

Այդ բանում իր փայլուն հաստատումն է գտել մարքսիզմ-լենինիզմի այն դրույթը, որ առաջավոր հասարակական կարգը անհրաժեշտության դեպքում ընդունակ է ստեղծելու ամենաառաջավոր ռազմական գիտություն և ռազմական կազմակերպություն։ Իր բոլոր հաջողությունների համար Սովետական Բանակը պարտական է մեծ Կոմունիստական պարտիային։ Պարտիայի, նրա լենինյան Կենտկոմի ղեկավարությամբ նա աճել ու ամրապնդվել է որպես նոր տիպի բանակ, որպես սոցիալիստական պետությունը պաշտպանող բանակ։

Քաղաքացիական պատերազմի տարիներին մեր բանակն ու նավատորմը հենվելով ամբողջ սովետական ժողովրդի աջակցության վրա, ջախջախեցին օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակառևոլյուցիայի միացյալ ուժերը։

Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում Սովետական Զինված Ուժերը ջախջախեցին հիտլերյան Գերմանիային և միլիտարիստական Ճապոնիային, համաշխարհային քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական ջարդարարներից և ձեռք բերեցին ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդների ջերմ համակրանքը։



Սովետական Զինված Ուժերում իր ղեկավար և ուղղություն ցույց տվող գործունեությունը Կոմունիստական պարտիան իրականացնում է տարբեր ուղիներով և զանազան ձևերով։ Պարտիան նշում է Սովետական պետության ռազմական շինարարության ընդհանուր ուղին և բանակի ու նավատորմի առջև՝ նրանց զարգացման յուրաքանչյուր էտապում դնում է գիտականորեն հիմնավորված խնդիրներ։ Ռազմական հարցերի վերաբերյալ պարտիայի բոլոր որոշումները բնութագրվում են խիզախ ստեղծագործությամբ և համապատասխանում են իմպերիալիստական ագրեսորներից մեր երկիրը պաշտպանելու պայմաններին և պահանջներին։

Մեր բանակի ուժի կարևորագույն աղբյուրներից մեկը այն է, որ նա կառուցվում և դաստիարակվում է մարքսիզմ-լենինիզմի գիտական հիմունքներով։ Սովետական Բանակի կառուցման սկզբունքները մշակվել են մեր պարտիայի և աշխարհում առաջին սոցիալիստական պետության կազմակերպիչ ու ղեկավար Վ. Ի. Լենինի կողմից։ Վ. Ի. Լենինը բոլշևիկյան պարտիային և մեր երկրի բանվոր դասակարգին ցույց տվեց հին ցարական բանակը օգտագործելու անհնարինությունը։ Նա տեսականորեն ապացուցեց և հիմնավորեց

բոլորովին նոր ու կանոնավոր բանակ ունենալու անհրաժեշտությունը։

Կոմունիստական պարտիան իր համագումարներում, կոնֆերանսներում և պլենումներում բազմաթիվ անգամ քննարկել է Սովետական Զինված Ուժերի կառուցման ու ամրապնդման հարցերը, միշտ ղեկավարել է նրանց գործունեությունը։ Պարտիան բացառիկ ուշադրություն է դարձրել բանակի քաղաքական օրգանների և պարտիական կազմակերպությունների ամեն կերպ ամրապնդմանը։

Ներկայումս Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը և ամբողջ սովետական ժողովուրդը չնայած ագրեսիվ շրջանների դիմադրությանը, բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ համերաշխ կերպով անխոնջ պայքար են մղում հանուն խաղաղության։ Երկու սիստեմների տնտեսական մրցության ընթացքը գնալով էլ ավելի ակնառու կերպով է վկայում այն աճող ազդեցության մասին, որ իր հաջողություններով գործում է սոցիալիզմը տնտեսական շինարարության համաշխարհային պատմության զարգացման վրա։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները անշեղորեն ընթանում են սոցիալիզմի ուղիով։



Համաշխարհային սոցիալիստական սիստեմը կարճ ժամանակամիջոցում այնպիսի հզոր ուժեր ծավալեց, որ նույնիսկ բացահայտ թշնամիները չեն կարող չճանաչել նրա խոշոր առավելությունները։ Սոցիալիստական լագերը վիթխարի նյութական ռեսուրսներ ունի։ Նա ունի բարձր զարգացած ժամանակակից արդյունաբերություն, այդ թվում նաև ռազմական, անհրաժեշտ հումքային ռեզերվներ։ Սոցիալիստական լագերի երկրների աչքի ընկնող հաջողությունները, նրանց արագ տնտեսական և կուլտուրական զարգացումը լայն արձագանք են գտնում այն ժողովուրդների մոտ, որոնք պայքարում են իրենց ազգային անկախության համար։

Կյանքը հաստատվեց հանճարեղ լենինյան դրույթն այն մասին, որ ներկայիս ժամանակաշրջանը կապիտալիստական սիստեմի քայքայման ու կործանման և սոցիալիստական սիստեմի բուռն ծաղկման ժամանակաշրջանն է։ Ելնելով այդ դրույթից, Սովետական կառավարությունը միշտ վարել ու վարում է խաղաղասիրական արտաքին քաղաքականություն։ Բայց միջազգային և առաջին հերթին ԱՄՆ-ի իմպերիալիզմը վճռականորեն մերժում է ՍՍՌՄ-ի այդ քաղաքականությունը, որն ուղղված է միջազգային լար-

վածության թուլացմանը, տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցությանը, և դրանց հակադրում է ուժի դիրքերից ելնող» իր քաղաքականությունը։

Ինչպես երևում է, երկրորդ համաշխարհային պատերազմի դասերը օգտակար չեն եղել ժամանակակից ագրեսորների համար։ ԱՄՆ-ը համաշխարհային տիրապետություն հաստատելու իր քաղաքականության գործիք է ընտրել ռազմական բլոկներն ու դաշինքները՝ ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն, Բաղդադի պակտը և մյուս խմբավորումները։ Այդ նույն քաղաքականությունը իր դրսևորումն է գտնում ուրիշ պետությունների տերիտորիաներում ամերիկյան բազմաթիվ ռազմական բազաների (ատոմա-ջրածնային և հրթիռային) ստեղծման մեջ։ Իմպերիալիստական երկրների ղեկավար շրջանները ահռելի ջանքեր են ներդնում սպառազինությունների մրցավազքը ուժեղացնելու համար։

Հյուսիս-ատլանտյան բլոկի գոյության ութ տարիների ընթացքում նրա մասնակիցները սպառազինվելու համար ծախսել են 364 միլիարդ դոլար։ Միայն ԱՄՆ-ը սպառազինման վրա այժմ ծախսում է այնքան, որքան նա ծախսում էր երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին։ 1940 թվականից մինչև



1945 թվականը ԱՄՆ-ը ռազմական նպատակների համար միջին հաշվով տարեկան ծախսել է 42,2 միլիարդ դոլար, իսկ միայն 1957/58 բյուջետային տարում այդ նպատակի համար պլանավորել է ծախսել 45,3 միլիարդ դոլար։

Միջազգային ռեակցիայի աճող ակտիվության պայմաններում Սովետական Միությունը, սոցիալիստական լագերի երկրները չեն կարող անհրաժեշտ միջոցառումներ չձեռնարկել, որպեսզի թշնամին նրանց հանկարծակիի չբերի։ Սովետական մարդիկ, ժողովրդա-դեմոկրատական երկրների աշխատավորները պետք է հիշեն մեծ Լենինի պատգամները. «...մեր քաղաքականության առաջին պատգամը, առաջին դասը,... որ պետք է յուրացնեն բոլոր բանվորներն ու գյուղացիները,— այս է՝ զգաստ լինել, հիշել, որ մենք շրջապատված ենք այնպիսի մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, որոնք բացահայտորեն մեծագույն ատելություն են տածում դեպի մեզ»։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, պահպանվում է նաև պատերազմների ծագման տնտեսական հիմքը և ռեակցիոն ուժերը կփորձեն սանձազերծել այն։ Այդ պատճա-

ռով էլ ՍՄԿՊ XX համագումարը նշեց՝ «Աչալուրջ կերպով հետևել այն շրջանների մեքենայություններին, որոնք շահագրգռված չեն միջազգային լարվածության մեղմացմամբ, ժամանակին մերկացնել խաղաղության թշնամիների քայքայիչ գործողությունները։ Անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել մեր սոցիալիստական պետության պաշտպանական հզորության հետագա ամրապնդման համար, մեր պաշտպանությունը պահել ժամանակակից ռազմական տեխնիկայի ու գիտության մակարդակի վրա, ապահովել մեր Հայրենիքի անվտանգությունը»։

Ներկայումս իմպերիալիստական ագրեսիայի ռեալ վտանգի առկայության պատճառով Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում ՍՍՌՄ Զինված Ուժերը ժամանակակից զենքով և ռազմական տեխնիկայով հագեցնելու մասին։ Սովետական գիտնականների, կոնստրուկտորների, ինժեներների և բանվորների անձնազոհ աշխատանքի և ստեղծագործական ջանքերի շնորհիվ Սովետական Զինված Ուժերը ներկայումս հագեցված են առաջնակարգ ռեակտիվ ինքնաթիռներով, զանազան ատոմային և ջերմամիջուկային զենքով, տարբեր տիպի հզոր հրթիռային և ռեակ-



տիվ սպառազինությամբ, այդ թվում նաև գերհեռավոր գործողության հրթիռներով։ Հրաձգային զորամասերը սպառազինված են նոր, առավել էֆեկտիվ զենքով և լիովին մոտորիզացված են։ Նրանց կազմի մեջ կազմակերպչորեն մտցված են բարձրորակ տանկեր և ինքնագնաց-հրետանային սարքավորումներ։ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հրետանու զարգացման գործում։ Մեծ ուշադրություն է դարձվում ՀՕՊ-ի վրա։ Մենք այժմ ունենք ձայնի արագությունը գերազանցող ժամանակակից կործանիչ ավիացիա, զենիթային-հրթիռային զենք։ Հոգատարություն է ցուցաբերվում Ռազմա-Ծովային Նավատորմի զարգացման նկատմամբ։

Բանակը մի բարդ օրգանիզմ է։ Նրա ուժն ու մարտունակությունն ամենից առաջ կախված են այն կազմակերպվածությունից, որը նրան տալիս է հրամանատարական կազմը։ Բանակի հրամկազմի կազմակերպչական ընդունակությունները պատերազմի ընթացքը և վախճանը վճռող ամենակարևոր ֆակտորներից մեկն է։ Լենինը սովորեցնում էր, որ Կարմիր Բանակի կառուցումը հաջողությամբ կավարտվի միայն ժողովրդի ծոցից ելած նոր սպայական կադրերի ստեղծման պայմանով. «...մենք պետք է

հրամանատարներ վերցնենք միայն ժողովրդից։ Միայն կարմիր սպաները զինվորների մեջ հեղինակություն կունենան ու կկարողանան մեր բանակի մեջ սոցիալիզմն ամրապնդել։ Այդպիսի բանակն անպարտելի կլինի»։

Վ. Ի. Լենինի մահից հետո, պարտիայի գլխավորությամբ զինվորական կադրերը աճել, ամրապնդվել, կատարելագործվել ու տիրապետել են սովետական ռազմական գիտությանը։ Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Բանակի հրամանատարական կադրերը պարտիայի ղեկավարությամբ իրենց փայլուն կերպով դրսևորեցին գերմանա-ֆաշիստական բանակի ջախջախման ժամանակ։ Այժմ Սովետական Զինված Ուժերը ունեն փորձված հրամանատարական կադրեր, որոնք զինված են առաջավոր մարքսիստական-լենինյան թեորիայով, սովետական ռազմական գիտությամբ։ Բոլոր սպաների, գեներալների ու ծովակալների մոտ 90 տոկոսը մասնակցել են Հայրենական Մեծ պատերազմին։ Իրենց մարտական փորձը նրանք լրացնում են տեսական և պրակտիկ գիտելիքներով։ Սպաների կազմի 86,4 տոկոսը կոմունիստներ և կոմերիտականներ են, իսկ բանակի և նավատորմի ամբողջ անձնակազ-



մի մեջ նրանք կազմում են 77 տոկոս։ Սովետական բանակը ունի նաև պահեստի բազմաթիվ սպայական կադրեր, որոնք մասնակցել են Հայրենական Մեծ պատերազմին։

Մեր ռազմական շինարարության գլխավոր հիմքը եղել է ու միշտ էլ կլինի պարտիական-քաղաքական աշխատանքը։ Քաղաքական օրգանների և պարտիական կազմակերպությունների միջոցով Կոմունիստական պարտիան ամրապնդում է իր կապերը բանակի և նավատորմի հետ, դաստիարակչական աշխատանք է տանում նրանց անձնակազմի մեջ։ Վ. Ի. Լենինը, Կոմպարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն մշտապես և անմիջականորեն զբաղվել են ռազմական շինարարության բոլոր հարցերով՝ Զինված Ուժերի կազմակերպվածությամբ, ղեկավարությամբ և դաստիարակությամբ։ Վ. Ի. Լենինի աշխատություններում, նրա դիրեկտիվներում ու ցուցումներում, պարտիական համագումարների ու կոնֆերանսների որոշումներում ցայտուն կերպով արտացոլված է պարտիայի չթուլացող հոգատարությունը երկրի պաշտպանության ամրապնդման, բանակի և նավատորմի կատարելագործման մասին։ Ինչպիսի հարցեր էլ վերցնենք, բանակի կազմակերպման, նրա կարգապահության, հրամ-

կազմի պատրաստման և սովետական ռազմական գիտության ստեղծման, սպառազինման կամ բանակի մատակարարման, և վերջապես, պատերազմի ժամանակ ռազմաճակատների մարտական ղեկավարման, մի խոսքով՝ իր բազմազանությամբ և ամբողջականությամբ ռազմական գործի հիմնական հարցերը միշտ եղել են Վ. Ի. Լենինի, պարտիայի և Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում: Ռազմական շինարարության բոլոր կողմերի, Զինված Ուժերի ամբողջ կյանքի նկատմամբ Կոմպարտիայի ցույց տված այդպիսի կոնկրետ, ուշադիր ու հոգատար ղեկավարությունը դարձել է մեր պարտիայի գործունեության անքակտելի օրենքը:

ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Հոկտեմբերյան պլենումի «Սովետական Բանակում և Նավատորմում պարտիական-քաղաքական աշխատանքի բարելավման մասին» որոշումը կրում է խիստ սկզբունքային բնույթ և հանդիսանում է ՍՍՌՄ Զինված Ուժերի ամրապնդման նկատմամբ Կոմունիստական պարտիայի ցուցաբերած նոր հոգատարության արտահայտություն:

---



# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿՊ Լենինականի քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Նախընտրական այս օրերին սովետական ժողովուրդը ավելի եռանդուն աշխատանք է կատարում ՍՄԿՊ 20-րդ համագումարի որոշումները կենսագործելու, սոցիալիստական արդյունաբերության բոլոր ճյուղերի նոր, հզոր վերելքն ապահովելու համար: Պետական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական մրցությունում ծնունդ են առնում հայրենասիրական նորանոր նախաձեռնություններ: Առաջավոր մարդիկ ստեղծագործական աշխատանքով բարելավում են արտադրության կազմակերպումը, նոր ուղիներ նշում բարձր արտադրողականության

հասնելու, արտադրանքի որակը բարելավելու և խնայողության ռեժիմ արմատավորելու համար։

Մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի և մյուս արդյունաբերական կենտրոնների արտադրական կոլեկտիվների և նորարարների առաջավոր փորձը լայն ճանաչման է արժանացել։ Լենինականի կարի և տրիկոտաժի ֆաբրիկաներում հաջողությամբ կիրառվում են Խարկովի, Կիևի, Ռիգայի և մյուս քաղաքների համանման ձեռնարկությունների փորձը։ Իվանովոյի տեքստիլագործների աշխատանքի առաջավոր փորձը մեր ագիտատորները դարձրին լենինականի տեքստիլագործների սեփականությունը։

Լենինականի երկաթուղայինները շատ նոր բան են սովորել Միության երկաթուղայիններից, կիրառում են վագոնների և շոգեքարշերի նորոգման կատարելագործված ձևեր ու մեթոդներ։

Արտադրության առաջավորների փորձի ուսումնասիրման և արմատավորման գործում մեծ դեր են կատարում ագիտկոլեկտիվները։ Այն ֆաբրիկաներում ու գործարաններում, որտեղ քաղաքական ագիտացիան կապվում է օրվա առաջադրված կոնկրետ խնդիրների



հետ, արտադրական հաջողությունները ավելի շատ են, իսկ թերությունները քիչ։

Այժմ քաղաքի արտադրական ձեռնարկություններում ավելի բովանդակալից ու նպատակասլաց է դարձել ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Քաղաքի պարտիական կազմակերպությունները առաջավոր փորձի պրոպագանդումը, լավ օրինակի վրա մարդկանց դաստիարակելը համարելով իրենց հարազատ գործը, ջերմորեն պաշտպանում և տարածում են արժեքավոր նախաձեռնությունները։

Այս հարցում սկզբնական պարտիական կազմակերպություններին լուրջ օգնություն ցույց տվեց քաղաքային կոմիտեն։ Բոլոր ձեռնարկություններում վերանայվեց ագիտատորների կազմը, այն համալրվեց արտադրության առաջավորների, ինտելիգենցիայի, ինժեներա-տեխնիկական աշխատողների ներկայացուցիչներով։

Առավոր փորձի սիստեմատիկ պրոպագանդումը միշտ էլ գտնվում է Ձերժինսկու անվան մանվածքային ֆաբրիկայի պարտիական կազմակերպության և նրա ագիտկոլեկտիվի ուշադրության կենտրոնում։

Ֆաբրիկան քաղաքի այն ձեռնարկություններից մեկն է, որը սիստեմատիկաբար

*տեխնիկա-տնտեսական ցուցանիշների գծով կատարում և գերակատարում է պետական առաջադրանքները։ Վերջին երկու տարիների ընթացքում համամիութենական սոցիալիստական մրցության մեջ կոլեկտիվը երկու անգամ առաջնություն է շահել և արժանացել խրախուսանքի։ Անցած տարվա համախառն արտադրանքի թողարկման պլանը ֆաբրիկան կատարեց ժամկետից շուտ, պլանից ավելի տալով 70 տոննա բարձրորակ մանվածք։ Նույն ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 20,1 տոկոսով, սոցիալիստական կուտակումները հասան 1 միլիոն 300 հազար ռուբլու։ Մանածագործները մեծ հաջողությամբ են աշխատում նաև նոր տարում՝ 1958 թվականին։*

*Կոլեկտիվի արտադրական հաջողություններում իր բաժինն ունի ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը։ Զրույցների թեմա դարձնելով պարտիայի ու կառավարության որոշումների պարզաբանումը, աշխատավորներին հուզող հարցերը, ագիտատորները բարձրացնում են արտադրության աշխատողների ակտիվությունը, նրանց դաստիարակում սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով։*

*Ֆաբրիկայի ցեխերում, հերթափոխություն-*



*ներում և բաժիններում ագիտացիոն աշխատանք են կատարում 41 ընկերներ։ Նրանք արտադրության մեջ աշխատող, բանվորների շրջանում հեղինակություն վայելող մարդիկ են։ Ագիտկոլեկտիվի ղեկավար Խ. Հակոբյանը շաբաթական մեկ անգամ հրավիրում է ագիտատորների սեմինար պարապմունք, լսում նրանց պահանջները, մշակում զրույցների կոնկրետ թեմաներ և տալիս է անհրաժեշտ մեթոդական ցուցումներ։ Աշխատանքի գործնական ձև է դարձել ագիտատորների հաշվետվություններ լսելը, նրանց համար դասախոսություններ կազմակերպելը։*

*Տարիների ընթացքում ֆաբրիկայում աճել է իրենց գործի վարպետ բանվորների, բանվորուհիների, արտադրության հրամանատարների մի ստվար ջոկատ։ Արտադրության այդ էնտուզիաստները արժեքավոր շատ նախաձեռնություններ են հանդես բերում, կատարելագործում են արտադրության տեխնոլոգիան, պայմաններ ստեղծում աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու համար։ Ֆաբրիկայի այդ անվանի մարդկանց փորձը սիստեմատիկաբար ագիտատորներն ուսումնասիրում ու մասսայականացնում են բանվորների լայն շրջանում։*

Ահա մի օրինակ, 1957 թվականին ֆաբրիկան ստացավ աշխատանքի արտադրողականության բարձրացման նոր առաջադրանք։ Հաշվումները ցույց տվեցին, որ ֆաբրիկայի կոլեկտիվը աշխատանքի կազմակերպման հին մեթոդով չի կարող կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման 1957 թվականի պլանը։ Ֆաբրիկայի պարտբյուրոյի և դիրեկցիայի նախաձեռնությամբ այդ հարցը քննության առնվեց արտադրական խորհրդակցությունում։ Խորհրդակցությանը մասնակցող մանող ցեխի բանվորուհիներ՝ Ժ. Պետրոսյանը, Ա. Ալեքսանյանը, բրիգադիրներ Զ. Նահապետյանը և Լ. Պետրոսյանը առաջարկեցին անցնել աշխատանքի բարձր խտացման մեթոդին։ Դա նշանակում էր, որ յուրաքանչյուր մանող բանվորուհի 720 իլիկի փոխարեն պետք է սպասարկեր 1080 իլիկ։ Առանձին ընկերներ անհնարին էին համարում այդ մեթոդի կենսագործումը։ Սակայն առաջավոր բանվորուհիներ Ժ. Պետրոսյանը և Ա. Ալեքսանյանը խորհրդակցության հաջորդ օրվանից սկսեցին սպասարկել 1080 իլիկ և գործնական աշխատանքով ապացուցեցին, որ յուրաքանչյուր մանող բանվորական ժամանակը ռացիոնալ օգտագործելու, տեխնոլոգիական



պրոցեսները ճիշտ կիրառելու միջոցով կարող է 720 իլիկի փոխարեն սպասարկել 1080 իլիկ։

Նորարար բանվորուհիների նախաձեռնությունը ագիտատորները դարձրին զրույցի նյութ։ Դրանից հետո մանող բանվորուհիների մեծ մասը հետևեց նրանց օրինակին և դրանով իսկ պայմաններ ստեղծեցին, որպեսզի ֆաբրիկան աշխատանքի արտադրողականության բարձրացման 1957 թվականի պլանը կատարի և գերակատարի։ Լավագույն նորարարական առաջարկություններից է նաև ֆաբրիկայի նախամանող ցեխի բանվորուհի Եկատերինա Զուբչենկոյի առաջարկությունը։ Նա առաջարկեց սանրող, ժապավենող և նախամանող մեքենաների վրա փոխել ժապավենի ծայրերը կապելու ձևը։ Այդ մեթոդը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և նպաստում է ֆաբրիկայի արտադրական պլանների կատարմանը։ Ներկայումս ֆաբրիկայի սանրող և նախամանող ցեխերի մոտ 200 բանվորուհիներ աշխատում են ընկ. Ե. Զուբչենկոյի օրինակով և ժապավենի կտրված ծայրերը միացնելու ժամանակ կիրառում են նրա առաջարկած ձևը։

Այս օրինակները եզակի չեն։ Իրենց լա-

վագույն նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկություններով ֆաբրիկայում հայտնի են սանրող բանվորուհի ընկ. Ա. Կասպերնիկյանը, նախամանող բանվորուհի ընկ. Վ. Սաֆարյանը, մանող ցեխի բրիգադիրներ Զ. Նահապետյանը, Լ. Պետրոսյանը, Ս. Սամսարյանը, փաթաթող բանվորուհիներ Ռ. Նիկոլյանը, Հ. Համամչյանը, փականագործ Ս. Սարգսյանը, վերանորոգող Հ. Վարդևանյանը և շատ ուրիշներ։ Սակայն խնդիրը միայն նրանով չի սահմանափակվում, որ ֆաբրիկայում կան գործիմաց նորարար մարդիկ։ Կարևոր է նաև այն, թե ինչպես են մասսայականացվում նրանց նորարարական մեթոդները և ինչպես է առաջավոր փորձը արմատավորվում արտադրության մեջ։ Այս գործում ֆաբրիկայի պարտիական կազմակերպությանը անգնահատելի ծառայություն են մատուցում ագիտատորները։

Շաբաթվա յուրաքանչյուր ուրբաթ օրը նրանք ագիտացիա են անցկացնում ամրացված աշխատամասերում և բանվորներին ծանոթացնում են պարտիայի ու կառավարության որոշումներին, ներքին ու արտաքին քաղաքականության հարցերին, ֆաբրիկայի առջև դրված խնդիրներին։ Դրա հետ մեկտեղ նրանք բանվորուհիներին ծանոթացնում



են ֆաբրիկայի և մեր երկրի մանվածքային ձեռնարկությունների նորարարական աշխատանքի մեթոդներին։ Որպեսզի ագիտատորները կարողանան կատարել այս ուղղությամբ իրենց առջև դրված խնդիրները պարտբյուրոն ագիտատորների համար կազմակերպում է կոնսուլտացիաներ, փորձված ինժեներա-տեխնիկական աշխատողների և նորարարների միջոցով ագիտկոլեկտիվի սեմինարում նրանց ծանոթացնում են առաջարկված մեթոդներին, հնարավորության դեպքում տալիս են անհրաժեշտ դիտակտիկ նյութեր, գրականություն, լուսանկարներ։

Նորարարական մեթոդները ագիտացիայի միջոցով բանվորներին սովորեցնելու հարուստ փորձ ունեն ագիտատորներ Ա. Ադամյանը, Ռ. Վալեսյանը, Գ. Սահակյանը, Շ. Մկրտչյանը և ուրիշները։

Աշխատանքի նորարարական մեթոդները արմատավորելու համար, ֆաբրիկայում լայն կերպով օգտագործվում են ցուցադրական ագիտացիայի միջոցները, ընդ որում նոր մեթոդի պրոցեսները լուսանկարվում և փակցվում են ցեխերում, տրվում է համապատասխան գրավոր բացատրություն։

Ուսանելի շատ բան կա նաև շոգեքարշային դեպոյի, պույպայի ֆաբրիկայի և մի շարք ագիտկոլեկտիվների աշխատանքներում։

# ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## (Թվեր և փաստեր)

*Սովետական ժողովուրդը հսկայական հաջողություններ է ձեռք բերել անցյալ, 1954 թվականին տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններից մինչև այժմյան նոր ընտրությունները ընկած ժամանակաշրջանում։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

★ *Անցած չորս տարիների ընթացքում վիթխարի մասշտաբներով աճել ու զարգացել է մեր երկրի ծանր արդյունաբերությունը, որը հանդիսանում է մեր ամբողջ էկոնոմիկայի հիմքերի հիմքը։ Ծանր արդյունաբերության հաջող առաջընթացը ապահովվում է, ինչպես հայտնի է, մետաղի, վառելիքի և էներգետիկ ռեսուրսների արտադրությամբ։ 1953 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 27,4 միլիոն տոննա չուգուն, 38,1 միլիոն տոննա պողպատ, հանվել է 59,6 միլիոն տոննա երկաթի հանքաքար։ 1957 թվականին արտադրվել է 37 միլիոն տոննա չուգուն, 51 միլիոն տոննա պողպատ և հանվել է 84,2 միլիոն տոննա երկաթի հանքաքար։*

★ *Քարածխի հանույթը 1953 թվականի 320,4 միլիոն տոննայի փոխարեն, 1957 թվականին կազմել է*



*463 միլիոն տոննա, կամ աճել է 44 տոկոսով, նավթի հանույթը՝ 52,7 միլիոն տոննայից հասել է մինչև 98,3 միլիոն տոննայի, կամ աճել է 86 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 134,3 միլիարդ կիլովատ-ժամից մինչև 209,5 միլիարդ կիլովատ-ժամի, կամ աճել է 56 տոկոսով։*

★ *Այդ նույն ժամանակամիջոցում հզոր զարգացում է ապրել նաև մեքենաշինությունը։ Մետաղահատ դազգահների արտադրությունը 1953 թվականին 91.759 հատի դիմաց 1957 թվականին կազմել է 130 հազար։ 1953 թվականին արտադրվել է 354 հազար 200 ավտոմոբիլ, իսկ 1957 թվականին՝ 495 հազար հինգ հարյուր ավտոմոբիլ։*

★ *Մեքենաշինության հաջող զարգացման հետևանքով չորս տարվա ընթացքում մեր երկրի գյուղատնտեսությունը հագեցվել է նոր, կատարելագործված մեքենաներով ու գյուղատնտեսական գործիքներով։ Եթե 1953 թվականի ընթացքում մեր երկրում թողարկվել է 111,3 հազար տրակտոր, ապա 1957 թվականին տրակտորների թողարկումը հասել է 204 հազարի։ 1953 թվականին արտադրված 43,1 հազար հացահատիկային կոմբայնի փոխարեն 1957 թվականին արտադրվել է 131 հազար հացահատիկային կոմբայն։ Միայն վերջին երեք տարիների ընթացքում մեր արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվել է ավելի քան 650 հազար տրակտոր, 142 հազար հացահատիկային կոմբայն, 345 հազար բեռնատար ավտոմեքենա և այլ տեխնիկա։*

★ Մեր երկրի արդյունաբերությունը լայնորեն թողարկել է նաև մեքենաներ ու մեխանիզմներ, որոնք հեշտացնում են շինարարական գործը, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունն ու որակը: Այսպես, 1953 թվականին թողարկվել է 4156 էքսկավատոր, 5794 բուլդոզեր, 219 ավտոգրեյդեր, իսկ 1957 թվականին՝ 9500 էքսկավատոր և 2064 ավտոգրեյդեր:

★ Վերջին չորս տարիների ընթացքում աննախընթաց զարգացում է ապրել նաև Սովետական Հայաստանի արդյունաբերությունը: Բավական է ասել, որ 1957 թվականին ռեսպուբլիկայում արտադրվել է 820 միլիոն կիլովատ-ժամ ավելի էլեկտրաէներգիա, քան 1953 թվականին: Մեր ռեսպուբլիկան այժմ արտադրում է երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան Թուրքիան, իսկ յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակով Սովետական Հայաստանը առաջ է անցել այնպիսի զարգացած կապիտալիստական երկրներից, ինչպես Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան: Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը վերջին չորս տարիներին աճել է ավելի քան մեկ և կես անգամ:

★ Ծանր արդյունաբերության անշեղ զարգացման հիման վրա ՍՍՌՄ-ում մեծ չափով աճել է նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը: 1953 թվականին արտադրվել է 1 միլիոն 700 հազար ռադիոհաղորդիչ և հեռուստատես, 49 հազար 200 սառցարան, 3 հազար 500 լվացքի և 993 հազար 200 կարի



մեքենա, իսկ 1957 թվականի ընթացքում արտադրվել է՝ 4 միլիոն 300 հազար ռադիոընդունիչ և հեռուստատես, 309 հազար սառցարան, 377 հազար լվացքի մեքենա, 2 միլիոն 300 հազար կարի մեքենա:

★ Մեր երկրի բոլոր ցանքատարածությունները 1953 թվականի 157,2 միլիոն հեկտարից աճել և այժմ հասել են 193,2 միլիոն հեկտարի: Աճը մեծ մասամբ տեղի է ունեցել խամ և խոպան հողերի յուրացման շնորհիվ:

★ Չորս տարվա ընթացքում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 4 միլիոն 200 հազարով, խոզերինը՝ 6 միլիոն 400 հազարով և ոչխարներինը՝ 8 միլիոն 900 հազարով:

★ 1957 թվականին, չնայած երկրի մի շարք շրջաններում կլիմայական անբարենպաստ պայմաններին, հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը, 1953 թվականի համեմատությամբ, ավելացավ 26 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 40 տոկոսով և հացահատիկային եգիպտացորենինը՝ մոտ 2 անգամ:

★ Հայաստանի կոլտնտեսությունները 1957 թվականին ամեն մի հեկտարից հավաքեցին 10,5 ցենտներ հացահատիկ՝ 1954 թվականի 5,3 ցենտների դիմաց: Չորս տարվա ընթացքում հասկավոր կուլտուրաների բերքատվությունը մեր ռեսպուբլիկայում աճեց կրկնակի անգամ, իսկ համախառն բերքը՝ մոտ 900 հազար ցենտներով:

★ ՍՍՌՄ-ում կաթի արտադրությունը 1954 թվականից մինչև 1957 թվականը ավելացել է մոտ երկու ան-

գամ: Կոլտնտեսություններում մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1954 թվականի 1.072 կիլոգրամից 1957 թվականին հասել է 1858 կիլոգրամի: 1954 թվականին մթերված 11,3 միլիոն տոննա կաթի փոխարեն 1957 թվականին մթերվել է 20,5 միլիոն տոննա: Դա նշանակում է, որ այժմ մեր երկրում կաթի արտադրությունը հասել է ԱՄՆ-ի կաթի արտադրության 95 տոկոսին, գործարանային արտադրության յուղի արտադրանքի ծավալը մեզ մոտ նույնն է ,ինչպես ԱՄՆ-ում, իսկ եթե հաշվի առնենք նաև տնային արտադրության յուղի արտադրանքը, ապա ՍՍՌՄ-ը այդ տեսակետից որոշ չափով արդեն առաջ է անցել ԱՄՆ-ից:

★ Եթե 1953 թվականին գյուղատնտեսության մեջ օգտագործվել է 2 միլիարդ 742 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1956 թվականին նրա օգտագործումը հասել է 4 միլիարդ 900 միլիոն կիլովատի: Բոլոր մեխանիզացված աշխատանքների ծավալը 1953 թվականի 545 միլիոն հեկտարից 1956 թվականին հասել է 765 միլիոն հեկտարի:

★ 1957 թվականին պետական և կոոպերատիվ կազմակերպությունների կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 210 միլիարդ ռուբլի: Միայն անցյալ տարվա ընթացքում շարք են մտել 800 նոր խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում՝ Նովոսիբիրսկի հիդրոէլեկտրակայանի առաջին ագրեգատները, Ստալինոյի, Ալչևսկի, Մակեևկայի և Ժդանովի մետալուրգիական կոմբինատների դոմենյան վառարանները, 95 խոշոր քարածխային հանքեր և այլն:

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ՓԱՍՏԵՐ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կապիտալիստական պետությունների կոնստիտուցիաներն ու ընտրական օրենքները հռչակում են գաղտնի քվեարկությամբ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունք: Սակայն պրակտիկայում ամեն ինչ արվում է, որպեսզի աշխատավորներին խանգարեն օգտվելու այդ իրավունքից, որպեսզի ապահովեն շահագործող փոքրամասնության և նրա քաղաքական պարտիաների հաղթանակը ընտրությունների ժամանակ:

✪ Մի շարք երկրներում (Շվեյցարիա, Իրաք, Հորդանան և այլն) կանայք զրկված են ընտրական իրավունքներից:

✪ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Հոլանդիայում, Դանիայում և մյուս կապիտալիստական երկրների մեծ մասում երիտասարդությունը զրկված է ընտրություններին մասնակցելուց, որովհետև ընտրական իրավունքից օգտվում են միայն այն անձինք,

որոնք 21—25 տարեկան են։ Այդ պատճառով էլ միայն Անգլիայում ընտրություններին չեն մասնակցում 18-ից մինչև 21 տարեկան ավելի քան 3 միլիոն պատանիներ ու աղջիկներ։ Իտալիայի ընտրական օրենքի համաձայն դեպուտատների պալատ կարող են ընտրել միայն 21 տարին լրացած անձինք, իսկ սենատ՝ 25 տարին լրացած անձինք։ Դեպուտատների պալատ կարող են ընտրվել միայն 25 տարին լրացած անձինք, իսկ սենատ՝ 40 տարեկանից ոչ-ցածր տարիքի երիտասարդները։

✪ Կապիտալիստական երկրներում գոյություն ունի նստակեցության ցենզ, ըստ որի ընտրողը մինչև ընտրությունները պետք է նույն տեղում ապրած լինի մի քանի ամիս և նույնիսկ տարի։ Դրա հետևանքով միլիոնավոր գործազուրկներ և սեզոնային բանվորներ, որոնք աշխատանք գտնելու համար ստիպված են թափառել երկրում, չեն կարողանում մասնակցել ընտրություններին։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում նստակեցության ցենզը կազմում է վեց ամսից մինչև երկու տարի։ Անգլիայում միայն այն անձինք կարող են քվեարկությանը մասնակցել, որոնք տվյալ ընտրական օկրուգի տերիտո-



րիայում ապրում են մինչև ընտրողների ցուցակ կազմելու օրը։

✪ ԱՄՆ-ում գոյություն ունի կրթական ցենզ. ընտրողները կարող են քվեարկության ցուցակ ընկնել միայն այն դեպքում, եթե նրանք անգլերեն լավ կարդում և գրում են ու կարող են ճիշտ մեկնաբանել երկրի կոնստիտուցիան։ Այդ ցենզը ձայնի իրավունքից զրկում է օտարերկրյա ծագում ունեցող շատ ամերիկացիների, ինչպես նաև բոլոր անգրագետ և կիսագրագետ բնիկ ամերիկացիներին։

Միլիոնավոր ամերիկյան քաղաքացիներ խուսափում են ընտրությունների ժամանակ քվեարկությանը մասնակցելուց, որովհետև նրանք երկրի գլխավոր բուրժուական պարտիաների՝ դեմոկրատականի և ռեսպուբլիկականի, թեկնածուներից ոչ մի լավ բան չեն սպասում։ Իսկ այլ թեկնածուների օգտին քվեարկելու համար ԱՄՆ-ում գոյություն ունեցող երկպարտիական սիստեմի պայմաններում ընտրողները փաստորեն հնարավորություն չունեն։ Ընտրողների կողմից ընտրությունների այդ փաստացի բոյկոտի մասշտաբների մասին կարելի է դատել հետևյալ թվերով. սկսած 1920 թվականից ԱՄՆ-ում պրեզիդենտական ընտրություններին մաս-

նակցել է ձայնի իրավունք ունեցող քաղաքացիների 48-ից մինչև 64 տոկոսը։ Վերջին պրեզիդենտական ընտրությունների ժամանակ գրանցված 80 միլիոն ընտրողներից քվեարկել է միայն 62 միլիոնը։

✪ Որպեսզի աշխատավորներին խանգարեն պառլամենտ անցկացնելու իրենց ներկայացուցիչներին, շատ երկրներում ստեղծվում են ոչ հավասար բնակչություն ունեցող ընտրական օկրուգներ։ Որպես կանոն, բուրժուական թաղամասերում օկրուգներն ունենում են զգալիորեն ավելի քիչ բնակիչներ, քան բանվորական թաղամասերի օկրուգներում։ Այսպես, օրինակ, Անգլիայում 1950 թվականի ընտրությունների ժամանակ Սաթերլանդի գյուղական ընտրական օկրուգում հաշվվում էր 25.887 ընտրող, այն ժամանակ, երբ Լեյտոնի և Դորտմունդի արդյունաբերական ընտրական օկրուգներում համապատասխանորեն եղել է 78.491 և 79.085 ընտրող։ Բնութագրելով ընտրական օկրուգների սիստեմը, ԱՄՆ-ում, «Լեյբորս էկոնոմիկ ռևյու» ամսագիրը գրում է. «Շատ հաճախ գոյություն ունի օկրուգների բնակչության մեծ անհավասարություն, խտրականություն՝ որոշ շրջանների ու բնակավայրերի նկատմամբ, բացահայտ կամայականություն՝



ընտրական օկրուգների սահմանների որոշման ժամանակ և ներկայացուցչության մեջ հավասարության այլ էական խախտումներ»։

Ահա այդ կարգի երկու օրինակներ։ Տեխասի նահանգի Հյուստոն քաղաքը, որի բնակչությունը հաշվվում է ավելի քան 800 հազար մարդ, ԱՄՆ-ի կոնգրեսում ունի նույն ներկայացուցչությունը, ինչ և այդ նույն նահանգի 12 գյուղական օկրուգները, որտեղ ապրում են 227 հազար մարդ։

Կալիֆորնիա նահանգի օրենսդիր ժողովի սենատորների մեծամասնությունը կարող է ընտրվել ընտրողների միայն 12 տոկոսով, Ռոդ Այլենդ նահանգինը՝ 14 տոկոսով, Նյու Ջերսիինը՝ ընտրողների 17 տոկոսով։

✪ Կապիտալիստական պետությունների ընտրական օրենքների հռչակած գաղտնի քվեարկության սկզբունքը պրակտիկայում միշտ խախտվում է։ Այսպես, օրինակ, Անգլիայում քվեարկության ժամանակ ընտրողը ստանում է բյուլետեն, որի կտրոնը մնում է ընտրական տեղամասում։ Բյուլետենը և նրա կտրոնը նշված են միևնույն համարով։ Ընտրողին բյուլետեն հանձնելիս կտրոնի վրա նշվում է այն հերթական համարը, որով գրանցված է ընտրողը ընտրական ցուցակում։ Դրա շնորհիվ կարելի է իմանալ, թե ով է

քվեարկել դեպուտատության թեկնածուի դեմ
կամ ով՝ անցանկալի թեկնածուի օգտին: Այդ
բանի համար բավական է գտնել քվեատու-
փից հանված բյուլետենի կտրոնը և գրանց-
ման ցուցակով պարզել ընտրողի ազգանունը:

✪ Մի շարք կապիտալիստական պետու-
թյուններում գոյություն ունեն բազմաստի-
ճան ընտրություններ: Հոլանդիայում, Շվե-
դիայում և մյուս երկրներում պառլամենտ-
ների վերին պալատներն ընտրվում են ոչ
թե ընտրողների կողմից, այլ ընտրողների
կողմից ընտրվածների կողմից: Դա օգնում է
շահագործող դասակարգերին աղավաղել ժո-
ղովրդի կամքը և պառլամենտ ուղարկել ի-
րենց պետքական քաղաքական գործամոլ-
ներին, որովհետև ընտրողների կողմից ըն-
տրվածները հաշվի չառնելով իրենց ընտ-
րողների կամքը, սովորաբար քվեարկում են
կառավարող պարտիաների թեկնածուների
օգտին:

✪ Որպեսզի պառլամենտը կազմվի բուր-
ժուազիային հարմար դեպուտատներից, կա-
պիտալիստական երկրների կառավարող շըր-
ջանները հաճախ ուղղակի դիմում են կեղծի-
քի: ԱՄՆ-ում հաճախակի ընտրական ցու-
ցակներն են մտցվում «Մեռած հոգիներ»:
միևնույն ընտրողները յուրացնելով վաղուց



մեռած ընտրողների ազգանունները, փոխե-
լով հագուստը և գրիմվելով, քվեարկում են
մի քանի անգամ: Լինում են նաև քվեատու-
փերի և բյուլետենների գողության դեպքեր:

Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի
ընտրական օրենքը ընտրողներին թույլ է
տալիս բունդեստագի ընտրություններին
մասնակցել ոչ միայն անմիջականորեն ընտ-
րական տեղամասում, այլև փոստով, իր
ընտրական բյուլետենը ուղարկելու միջո-
ցով: Դա լայն հեռանկարներ է բացում զա-
նազան մեքենայությունների համար:

Արևմտագերմանական բուրժուական թեր-
թերը բացահայտ կերպով գրում էին, որ
բունդեստագի 1957 թվականի ընտրություն-
ների ժամանակ ընտրողները փոստի միջո-
ցով «քվեարկել» են միայն խաբեության
հետևանքով: Այսպես, «Նոյե Ռեյնցայտունգ»
թերթը Հեսսենից և Ներքին Հռենոսից ստաց-
ված հաղորդագրություններում հայտնում էր,
որ կաթոլիկ կույսերը և նրանց «կամավոր
օգնականները» հիվանդ և ծեր ընտրողներին
հորդորում էին ստորագրել իրենց բյուլետեն-
ները և դրանք փոստով ուղարկել ընտրական
տեղամաս:

✪ Թուրքական թերթերի հաղորդումների
համաձայն մեջլիսի 1957 թվականի հոկտեմ-

քերին կայացած ընտրությունները անցան տեռորի պայմաններում։ Դեմոկրատական և ժողովրդա-ռեսպուբլիկական պարտիաների կողմնակիցների միջև հաճախակի տեղի էին ունենում կատաղի ձեռնամարտեր, որոնց ժամանակ եղան նաև մարդկային զոհեր։ Մի շարք քաղաքներում մտցվեց արտակարգ և ռազմական դրություն։ Անկարայում, Ստամբուլում և այլ քաղաքներում բանակային զորամասերը մարտական պատրաստության մեջ դրվեցին։

✪ Բուրժուական բոլոր երկրներում լայնորեն տարածված է ընտրողներին կաշառելը։ Ահա թե ինչպես է նկարագրում Ջորջիա նահանգում (ԱՄՆ) գոյություն ունեցող ընտրական կարգը ամերիկյան ամսագրերից մեկը. «Հաճախ ձայները վաճառվում են մեկ դոլարով կամ մի կում ռոմով։ Ընտրողների ցուցակներն են մտցվում այնպիսի անձինք, որոնք գտնվում են գժանոցում և կամ արդեն մահացել են։ Քվեարկության արդյունքները հաճախ չեն հաշվում և դրա փոխարեն հրապարակվում են կեղծ տվյալներ։ Վերջերս օկրուգներից մեկում նախնական ընտրությունների ժամանակ ձայները վաճառվում էին ինչպես աճուրդում։ Մեկ թեկնածուից մյուսին անցնելով ընտրողներից մի քանիսը



իրենց ձայների գինը հասցնում էին մինչև 50 դոլարի։ Մի ընտանիք, որտեղ կար հինգ ընտրող, իր բոլոր ձայները վաճառեց 100 դոլարով։ Ամբողջությամբ վերցրած, կարելի է հաշվել, որ Ջորջիա նահանգում ձայների 30-ից մինչև 40 տոկոսը փողով են վաճառվում»։

Ընտրողներին կաշառելը լայնորեն կիրառվում է նաև մյուս բուրժուական երկրներում։

✪ Այս փաստերի լույսի տակ զարմանալի ոչինչ չկա այն բանում, որ կապիտալիստական երկրների օրենսդիր օրգաններում տիրապետում են շահագործող դասակարգերի ներկայացուցիչները։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի կոնգրեսի ներկայիս կազմում բանկիրներն ու արդյունաբերողները զբաղեցնում են սենատի տեղերի 30 տոկոսը և ներկայացուցիչների պալատի տեղերի 34 տոկոսը։ Ամերիկյան սենատորների 21 տոկոսը խոշոր հողատերեր են։ Կոնգրեսի անդամների մեջ աշխատավորության ոչ մի ներկայացուցիչ չկա։

---

# ՕՐԻՆԱԿԵԼԻ ԹԵՄԱՆԵՐ

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*1. Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեր առաջնորդն է, մեր ուսուցիչը.*

*2. Մեր Մեծ Սովետական Հայրենիքը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է.*

*3. Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը Սովետական պետության ուժի և ամրության հիմքն է.*

*4. Անխախտ է ՍՍՌՄ ժողովուրդների միասնությունն ու բարեկամությունը.*

*5. Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը։*

*6. Սովետական ժողովուրդը հաջողությամբ է կատարում ՍՄԿԿ 20-րդ համագումարի պատմական որոշումները.*

*7. Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան (1957 թ.) պլենումի որոշումները.*

*8. ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայի արդյունքները.*

*9. Սովետական Միությունում իրագործված է իսկական ժողովրդաիշխանություն.*



*10. Բուրժուական դեմոկրատիան դրախտ է հարուստների համար, թակարդ և խաբեություն շահագործվողների համար, աղքատների համար.*

*11. Ինչպիսի՞ իրավունքներ է երաշխավորում ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացիներին և ինչպիսի՞ պարտականություններ է դնում նրանց վրա։*

*12. Մեզ մոտ քվեարկում են բոլորը (Սովետական ընտրական սիստեմի դեմոկրատիզմի մասին).*

*13. Ինչպե՞ս է կառուցված և ինչպես է աշխատում ՍՍՌՄ Գերագույն Սովետը.*

*14. Սովետական դեպուտատը ժողովրդի ծառան է.*

*15. Կոմունիստների և անկուսակցականների անխախտ բլոկը.*

*16. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները նշանավորենք նոր աշխատանքային հաղթանակներով.*

*17. Աշխատանքը ՍՍՌՄ-ում պատվի, փառքի և արիության գործ է.*

*18. Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է.*

*19. Ինչպիսի նվաճումներով են դիմավորում Սովետական Հայաստանի աշխատավորները ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները.*

*20. Սովետական Հայաստանը վերջին չորս տարում.*

*21. Պատվով կատարենք ՀԿԿ 19-րդ համագումարի որոշումները.*

*22. Աշխատանքի արտադրողականության բարձրա-*



ցումը ամենակարևորը, ամենագլխավորն է կոմունիզմի հաղթանակի համար.

23. Հաջողությամբ կատարենք 1958 թվականի ժողովրդատնտեսական պլանը.

24. 1958 թվականի առաջին եռամսյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարելը աշխատավորների յուրաքանչյուր կոլեկտիվի պատվավոր գործն է.

25. Հայրենիքին տանք ավելի շատ միս, կաթ և յուղ.

26. Գարնանային-դաշտային աշխատանքներին օրինակելիորեն պատրաստվելով պայմաններ ստեղծենք գյուղատնտեսության նոր հզոր վերելքի համար 1958 թվականին.

27. Ինչպես է իրագործվում ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը՝ հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության տեսակետից.

28. Երկրի արհեստական արբանյակների բաց թողումը սովետական գիտության և տեխնիկայի մեծագույն նվաճումն է.

29. Միջազգային բանվորական շարժման և նրա ավանգարդի՝ կոմունիստական պարտիաների աճն ու ամրապնդումը.

30. Ինչպիսի հաջողությունների է հասել սոցիալիզմի համաշխարհային սիստեմը.

31. Անցումը սոցիալիզմին մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունն է.



32. Աշխարհի ժողովուրդների պայքարը խաղաղության համար

33. Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը ՍՍՌՄ արտաքին քաղաքականության հիմքն է.

34. Կոմունիզմը—մեր լուսավոր վաղն է։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ